2) Սուրիա կ'ընդունի այն բոլոր ծախքերը զորս Ֆրանսացիները ըրած են Սուրիոյ մէջ, գրաւման օրէն ի վեր:

3) Բոլոր գիտական խորհրդականներն ու զինուորական ուսուցիչները Ֆրանսացիներէ պիտի ընտրուին:

4) Ֆրանսացիներէ բաղկացեալ ջոկատ մը պիտի պահուի Սուրիոյ մէջ, սահմանները պահպանելու համար:

5) Սուրիա իր մաքսային հասոյթները ցոյց պիտի տայ արտաքին յանձնառութեանց փոխարէն:

6) Առանց Ֆրանսայի հաւանութեան Սուրիա ո եւ է օտար պետութեան հետ դաշնագիր պիտի չկնքէ:

7) Սուրիա իրաւունք պիտի ունենայ օտար պետութեանց մօտ դիւանագիտական ներկայացուցիչներ կարգելու, պայմանաւ որ Ֆրանսայի հաւանութիւնը առնէ:

8) Ներկայ դաշնագրին ստորագրութենէն սկսեալ երեք տարուան ընթացքին, Ֆրանսա պիտի պահանջէ Ազգերու Դաշնակցութեան մէջ ընդունիլ Սուրիան եւ այս պահանջը իրականացնելու համար ամէն ջանք պիտի թափէ:

## Փարիզ եւ շրջակաները

Ց.
Հ. Դ.

*ՊԱՆԵԼՕ-ՔԱՇԱՆ «Արծիւ» խումբի դասախօսական ժողովը այսօր, Շաբ. երեկոյ, ժամը 8.30ին, ընկեր Տիգրան Տէրօեանի բնակարանին մէջ, 9,* rue Mme. Curie. Bagneux.

*ԱՌՆՈՒՎԻԼԻ «Ռազմիկ» խումբի ժողովը այսօր, Շաբաթ երեկոյ ժամը 8.30ին, ընկեր Յարութիւն Խաչատուրեանի բնակարանը, 30* rue du Parc. *Ներկայ կ'ըլլայ Ենթակոմիտէի անդամ ընկեր Խաչիկ Մկրտիչեան:*

ԱՆԻԷՌ-ՊՈԽԱ-ՔՈԼՈՆՊԻ Առժամեայ մարմինը ժողովի կը հրաւիրէ *Արամ, Մասիս* եւ *Մուրատ* խումբերը վաղը կիրակի երեկոյ, ժամը 8.30ին, Պէքոնի կայարանին դիմացի ծանօթ հաւաքատեղին: Ներկայանալ անդամատետրով:

*ԻՍԻ-ԼԷ-ՄՈՒԼԻՆՈՅԻ «Մուրատ» խումբի դասախօսական ժողովը վաղը, կիրակի, կէս օրէ վերջ ժամը 2.30ին Ակումբին մէջ: Կը խօսի ընկ. ՀՐԱՆՏ-ՍԱՄՈՒԷԼ: Կը հրաւիրուին շրջանիս բոլոր ընկերները:*

## Գաւառ

*ՄԱՐՍԷՅԼԻ Պուլվար Օտտօի Վռամեան Ենթակոմիտէն սախպողաբար ընդհանուր ժողովի կը հրաւիրէ Հրայր, Մուրատ, կայծակ եւ գայլ վաճան խումբերու բոլոր ընկերները վաղը Կիրակի երեկոյ ժամը 6ին, ծանօթ հաւաքատեղին: Ներկայանալ անդամատետրով: Բացակաները նկատի պիտի առնուին: Խիստ կարեւոր օրակարգ:*

*ՎԻԷՆԻ «Քրիստափոր» խումբի ընկերները ժողովի կը հրաւիրուին 6 Դեկտ. Չորեքշաբթի երեկոյ ժամը 7.30ին, «Խաժակ» ակումբը: Կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:*

ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋ. ԿՈՄԻՏԷԻ ԺՈՂՈՎՆԵՐԸ

*ԱՎԻՆԵՕՆ-ՍԷՆ-ՍԱԹՈՒՐՆԷՆի «Անդրանիկ» խումբի ընկերական դասախօսական ժողովը վաղը Կիրակի, կէս օրէ վերջ ժամը 2ին սովորական հաւաքատեղին: Կը դասախօսէ՝ ընկ. Պ. Հիւսեան: Ներկայ կ'ըլլայ Կոմիտէի ներկայացուցիչը՝ ընկեր ԿԱԿՈՍԵԱՆ,*

*ՍԱԼԻՆ ՏԸ ԺԻՌՕԻ ընկերները ժողովի կը հրաւիրուին վաղը Կիրակի, կէս օրէ վերջ ժամը 2ին: Զեկոյց՝ 10րդ Շրջ. Ժողովի: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտադիր է:*

**Փարիզի Գրական Ակումբ** *այս իրիկուն, ժամը 9ին, 131,* rue Cambronne, métro Vaugirard. *Տեղի կ'ունենայ մտքերի փոխանակութիւն՝ «Հինի եւ նորի հարցը արտասահմանեան հայ գրականութեան մէջ» զեկոյցի առթիւ:*

*Մուտքը ազատ է:*

## Դասախօսութիւն

*Կ. Պոլսոյ Ազգ. Կեդր. Վարժարանի Նախկին Սանուց Միութեան կողմէ այսօր Շաբաթ երեկոյ ժամը 8.30ին* Maison de la Mutualitéի L *սրահին մէջ,* 24 rue St. Victor: *Կը դասախօսէ՝ Պ. ՏԻԳՐԱՆ ԻՍԿԻԿԵԱՆ, Լիսանսիէ էս-լէթրը Սորպոնէն, նիւթ ունենալով՝* Պատասխանատուութեան գաղափարը արդի ընկերաբանութեան մէջ:

*Մուտքը ազատ է*



*Պ. Բենիամին Արթինեան, Տիկ. Եսթեր Թորոսեան, Պ. Սահակ Թորոսեան, Պ. Մակար Վարդապետեան, Պ. Բենիամին Վարդապետեան, Պ. Ահարոն Թորոսեան, Պ. Յարութիւն Թորոսեան, Պ. Համբար Վարդապետեան, Պ. Միսաք Հայկէչեան, Պ. Միսաք Արթինեան, Պ. Վարդեվառ Խաչատուրեան, Պ. Հրանդ Մարգարեան սրտի խորունկ կսկիծով կը ծանուցանեն իրենց կնոջ, աղջկան, զարմիկին, հարսին, քենիին եւ ազգականուհիին՝*

**ՏԻԿ. ԱՐՇԱԿՈՒՀԻ ԱՐԹԻՆԵԱՆԻ**

*դառնաղէտ մահը՝ որ տեղի ունեցաւ Նոյ. 18ին Սէնթ Անթուանի մէջ, 25 տարեկան երիտասարդ հասակին մէջ, ձգելով 4 տարեկան զաւակ մը:*

*Յուղարկաւորութիւնը տեղի ունեցաւ Նոյ. 20ին եւ մարմինը ամփոփուեցաւ տեղւոյն գերեզմանատունը:*

Սէնթ Անթուան (Մարսէյլ), *30 Նոյ.*

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

***ՍՏԱՑԱՆՔ***

*Թաւրիզ, Գործ.— 1000 ֆր.:*
*Մարսէյլ, Գործ.— 880:*
*Մարսէյլ, Յ. Պ.— 140:*
*Մարսէյլ, Ն. Կ.— 280:*
*Մարսէյլ, Կ.— 40:*
*Մարթիկ, Օ. Ք.— 70:*
*Փէզընա, Ա. Ճ.— 120:*

Նոր բաժանորդներ

*Վիլմոնպըլ, Կ. Ե. — 35: Սկսանք ղրկել Դեկտ. 1էն:*
*Սէն Սաթուրնէն, Լ. Օ.— Սկսանք ղրկել Դեկտ. 1էն:*
*Տիկին Գ.— Սկսանք ղրկել Նոյեմ. 30էն:*
*Միրամոն, Ռ. Ս.— Սկսանք ղրկել Դեկտ. 1էն:*

### ԿԱՐԵՒՈՐ ԺՈՂՈՎ ՄԸ

վաղը Շաբաթ, կէս օրէ վերջ, ժամը 3.30ին քաֆէ վօլթէրի (փլաս տը լ'Օտէօն) մէջ տեղի կ'ունենայ *Հայկական Փոխադարձ Ապահովագրական Միութեան* հիմնադիրներու ժողովը, որուն կրնան մասնակցիլ փափաքող ազգայինները:

Օրակարգ.— *Վիճաբանութիւն եւ վաւերացում կանոնագրի, ընտրութիւն վարչութեան:*

Նախաձեռնող յանձնախումբ



## Հայ Ժողովրդական Թատրոնը

*ԱՅՍՕՐ, ՇԱԲԱԹ ԳԻՇԵՐ, ԺԱՄԸ 8.30ին*

*ԱԼՖՈՐՎԻԼԻ ՀԱՅ ԱԿՈՒՄԲԻ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ*

կը ներկայացնէ՝ ԶԱՅԻ ԶԱՄԱՐ

(տրամ 3 արար՝ Ա. ԱԲԷԼԵԱՆի)

*Կը մասնակցին.—* Տիկ. գայեանէ, Օրիորդ Տէր-Թովմասեան, Պ. Պ. կոթիկեան, Թորոսեան, Նիկողոսեան, Տէրվիշեան, գազանճեան եւյլն.:

Պզտիկներու համար աթոռ չտրամադրուիր:

*Տոմսերու գիներն են՝ 3 եւ 5 ֆրանք:*

## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՀԱՆԴԷՍՆԵՐ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ Զ. Ռ. ՄԻՈՒԹԵԱՆ ՄԱՍՆԱՃԻՒՂԵՐՈՒՆ ԿՈՂՄԷ

ԼԻՈՆԻ ՄԷՋ

*ԱՅՍՕՐ, ՇԱԲԱԹ ԵՐԵԿՈՅ Գ. ԹԱՂԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ*
*ԵՒ*

ՎԻԷՆԻ ՄԷՋ

*ՎԱՂԸ, ԿԻՐԱԿԻ ԳԻՇԵՐ ԺԱՄԸ 8ին*
*ՌԱՄԿԱՎԱՐ ԱԿՈՒՄԲԻՆ ՄԷՋ*

Կը նախագահէ՝ Պ. ՎԱՐԴԱՆ ՁՈՒԼԼԷՐԵԱՆ

Կը խօսին՝ Պ. ԱՇՕ ՇԱՀԽԱԹՈՒՆԻ եւ Պ. ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ

Կ'երգէ՝ ՏԻԿ. Ե. ԲԱԴԱԼ

Տէսինի *ԱՐԾԻԻ* փանֆառը, ընկ. Աւետիս Մելքոնեան (*Ջութակ*):

*Փնտռել մասնաւոր յայտագիրը:*

ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

*ՎԱՂԸ, ԿԻՐԱԿԻ ԿԷՍ ՕՐԷ ՎԵՐՋ ԺԱՄԸ 2.30ին*
*Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ԱԿՈՒՄԲԻՆ ՄԷՋ*

Կը խօսին՝ Ա. ՇԱՀԽԱԹՈՒՆԻ եւ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

## ԹԷՅԱՍԵՂԱՆ

*ՍԵԲԱՍՏԻՈՅ «Ա Յ Գ» ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ՄԻՈՒԹԵԱՆ ԹԷՅԱՍԵՂԱՆԸ*

տեղի կ'ունենայ վաղը, կիրակի կէս օրէ վերջ ժամը 2.30ին Mutualitéի շքեղ սրահին մէջ: 24 rue St. Victor

Կը խօսին՝ Պ. Ա. ՎՏԱՐԱՆԴԻ եւ ՏՈՔԹ. Ա. ՊՕՂՈՍԵԱՆ

*Գեղարուեստական բաժնին կը մասնակցին՝* Պ. Պ. Ա. Գմբէթեան եւ Ե. Գրիգորեան (*արտասանութեամբ*): Պ. Աբգար (*Թառով*):

*Կը հրաւիրուին Սեբաստիոյ եւ Շրջանի հայրենակիցները անխտիր:*

Մուտքը ազատ է



**Imprimerie A. DER (AGOPIAN)**
**Le Gérant : H. STEPHAN**
**17, Rue Damesme :-: PARIS (13e)**

է Պարսկաստանի, Անգլեւպարսիկ քարիւղի ընկերութեան մենաշնորհին ջնջման առթիւ: Եթէ մինչեւ դեկտ. 15 եա չառնուի որոշումը, Անգլիա խնդիրը պիտի յանձնէ Լահէի դատական ատեանին, եւ միջոցներ ձեռք պիտի առնէ, իր շահերը պաշտպանելու համար: Խորհրդականը աւելցուց թէ կառավարութիւնը իրեն կը վերապահէ յարմար դատած միջոցները ձեռք առնել: Աշխատաւորական երեսփոխան մը հարցուց թէ «յարմար դատած միջոցները» կը նշանակե՞ն նաեւ զինեալ գործողութիւն: Խորհրդականը յայտարարեց թէ չի կրնար պատասխանել թէական հարցումներու:

*** Պարսկաստան կարճ ծանուցագրով մը լուսաբանութիւններ կուտայ մենաշնորհի ջնջման մասին, շեշտելով որ քանիցս դիտել տուած է թէ այդ մենաշնորհին պայմանները չեն համապատասխաներ երկրին օրինաւոր շահերուն եւ թէ գոհ չէ ընկերութեան ընթացքէն: Ծանուցագիրը կ'աւելցնէ թէ կառավարութիւնը ինքզինքը պատասխանատու չի նկատեր ընկերութեան կրելիք վնասներուն համար, եւ պատրաստ է նոր բանակցութիւններ կատարելու:

Անգլ. կառավարութիւնը «բոլորովին անգոհացուցիչ» համարելով այս պատասխանը, ղրկած է երկրորդ ծանուցագիրը, որուն ամփոփումը տուինք վերը:









7ՐԴ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ, ԿԻՐԱԿԻ 18 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1932



Ս. ԹՈՐՈՍԵԱՆ

## ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԹԱՏՐՈՆ

STUDIO RUDOLF սրահը, 6bis, Rue Campagne Première, Mét. Raspail

Ղեկավարութեամբ՝ Ա. ԿՈԹԻԿԵԱՆԻ եւ Ս. ԹՈՐՈՍԵԱՆԻ

18 Դեկտ. կիրակի իրիկուն ժամը 8.30ին

Առաջին անգամ ըլլալով Փարիզի մէջ կը ներկայացուի

«ՓՕԹԱՇԵԻ ՓԵՐԼԱՄՈՒՏՐ» Թարգ. Յ. ԳԱՐԻԲԵԱՆԻ

Մօնթէկիւ կլասի ծիծաղաւոր գօմէտին (3 արար)

3   ժ ա մ   ա ն ը ն դ հ ա տ   ծ ի ծ ա ղ

Բեմի կառավարիչ՝ Ն. Նիկողոսեան   Հերթ. բեմ. Ս. Թորոսեան

Կը մասնակցին՝ տիկիններ՝ Լաթիֆեան, Լուսիկ, Օրիորդներ՝ Մելինէ, Պետրոսեան, Պ. Պ. Անտոնեան, Գազանճեան, Գմբէթեան, Թորոսեան, Լաթիֆեան, Կոթիկեան, Մեծատուրեան, Նիկողոսեան, Պերճիկ, Սրապեան, եւայլն:

ՏՈՄՍԵՐՈՒ ԳԻՆԵՐ՝ 3 եւ 5 ՖՐԱՆՔ

Տոմսերը նախօրօք կը ծախուին Հրանտ-Սամուէլ գրատունը, Ճաշարան Ֆլօրիա եւ սովորական վայրերը:









## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՓԱՅԼՈՒՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ



ՕՐ. Ա Ն Ա Հ Ի Տ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ

ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԳԻՆԵՐՈՎ

18 Դեկտ. 1932 կիրակի գիշեր ժամը 9ին

**Salle des Saciétés Savantes**ի մէջ

**8 Rue Danton   Metro St. Michel et Odéon**

կը ներկայացուի աննախընթաց պատրաստութեամբ

Գերմանացի ծանօթ թատերագիր ՄԱՔՍ ՏՐԷՀԷՐԻ

# 17 ՏԱՐԵԿԱՆՆԵՐԸ

Տ ո ւ ն   ե ր ե ք   ա ր ա ր

եւ

ՍՄՈՒՍՆՈՒԹԵԱՆ ԱՌԱՋԱՐԿ

կատակերգ. մէկ արար   ՀԱՆՐԻ ՊՕՐՏՕԻ

Կը մասնակցին՝ ՏԻԿ. ԱՆԱՀԻՏ, ՏԻԿ. ՔՆԱՐ, Պ. Պ. Լ. ՅԱՐՈՒԹ, ԼԱՔՔԱ, Գ. ՏԷՐՎԻՇԵԱՆ, եւն.

ԳԻՆԵՐԸ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ.— 15, 10 ԵՒ 5 ՖՐԱՆՔ

Տ ո մ ս ե ր ը   ա մ է ն   տ ե ղ   ե ւ   « Կ ա վ ո ց » ի   մ օ տ


























Imprimerie A. DER (AGOPIAN)

Le Gérant : H. STEPHAN

17, Rue Damesme :-: PARIS (13)

## 500 արքայական ուսանողներ ձերբակալուեցան

Ինչպէս գրած էինք, արքայականները ցոյց մը կազմակերպած էին Երեսփ. Ժողովին դէմ, պարոտքերու վճարման առթիւ: Ոստիկանութիւնը արգիլած էր, բայց ուսանողները նկատի չէին առած: Սէն Միշէլէն մինչեւ Երեսփ. Ժողովին առջեւ բոլոր անցքերը բռնուած էին: Նախ 4—500 ուսանողներ, մեծ մասով արքայական, թափօր մը կազմեցին Իրաւագիտական վարժարանին առջեւ, եւ իջան դէպ ի Սէն Միշէլ, պոռալով.

— Անկցի՜ն պարտքերը: Ոչ մէկ սու Ամերիկայի: Անկցի՜ Էռիօն:

Ոստիկանները ճամբան խափանած ըլլալով, ընդհարումներ պատահեցան եւ առաջին առթիւ 40—50 հոգի ձերբակալուեցան: Սոլֆերինոյի փողոցին անկիւնը, ոստիկանական նոր չղթայ մը դիմաւորեց ուսանողները, որոնք փորձեցին հատ-հատ սողոսկիլ, անարգական բացագանչութիւններ արձակելով Մ. Նահանգներուն եւ Էռիոյի դահլիճին դէմ: Ցուցարարները քանի կը մօտենային Երեսփ. Ժողովին, ոստիկանները այնքան կը խստացնէին հետապնդումը: Իրիկուան ժամը 6·30ին բաւական բուռն հրմշտուքներ տեղի ունեցան եւ ոստիկանութիւնը յաջողեցաւ խափանել ցոյցը: Զանազան ընդհարումներու ընթացքին, աւելի քան 400 ձերբակալութիւններ կատարուեցան: Կալանաւորներուն մէջ կային «Աքսիոն Ֆրանսէզ»ի խմբագիրները: Իրիկունը ուշ ատեն նոր ցոյց մը տեղի ունեցաւ Երեսփ. Ժողովին առջեւ, եւ այս առթիւ ալ 60 հոգի ձերբակալուեցան: Անշուշտ բոլորն ալ պիտի արձակուին:

## Պալքանները աջակցութիւն կը խնդրեն

Ռումանական կառավարութիւնը որոշեց վերսկսիլ բանակցութիւնները Ազգերու Դաշնակցութեան ելմտական յանձնախումբին հետ, փոխառութիւն մը ստանալու համար: Անցեալ հոկտեմբեր 6ին համաձայնութիւն մը գոյացած էր այս մասին, բայց ռումանական կառավարութիւնը անընդունելի գտաւ դրուած պայմանները, քանի որ օտար հակակշիռ կը հաստատուէր կառավարութեան գլխուն: Անկէ ի վեր Ռումանիոյ տնտեսական կացութիւնը աւելի ծանրացած ըլլալով, այժմ նոր պատուիրակութիւն մը պիտի ղրկուի, բանակցութիւնները վերսկսելու համար:

Ինչպէս գրած էինք, Պուլկարիոյ մէջ, Ազգերու Դաշնակցութիւնը ինք պատուիրակութիւն մը ղրկած է, քննութիւններ կատարելու, ելմտական հակակշիռ հաստատելու եւ... փոխ տրուած դրամներուն տոկոսները ապահովելու համար:

Պուլկարիոյ Թագաւորը ճառ մը խօսելով, չեշտեց թէ տաժանելի է երկրին ելմտական եւ տնտեսական վիճակը, բայց կը յուսայ որ դարման մը պիտի գտնուի:

---

Յ.

Հ. Դ.

### Փարիզ եւ արուարձաններ

ՓԱՐԻԶԻ Իթալիի Աղբիւր Սերոբ խումբի ժողովը, այս Շաբաթ իրիկուն ժամը 8ին, 32 Ավընիւ Կոպըլէն: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Ներկայանալ անդամատոմսով:

### Գաւառ

ՄԱՐՍԷՅԼԷ Հ. Յ. Դ. Պատանեկան Միութեան ընդհ. ժողովը վաղը, Հինգշաբթի երեկոյ ժամը 8.30ին, գրադարան-ընթերցարանին մէջ, 49, բիւ Նասիոնալ: Կարեւոր օրակարգ:

ՄԱՐՍԷՅԼԻ «Ռոստոմ» ենթակոմիտէի ընդհ. անդամական ժողովը այս Ուրբաթ երեկոյ, ժամը 9ին, Պատ. Միութեան Գրադարանին մէջ, 49, բիւ Նասիոնալ: Պարտաւորիչ ներկայութիւն:

---

## Հրապարակային դասախօսութիւն Շավիլի մէջ

Նախաձեռնութեամբ՝ Հ. Յ. Դ. ԱՐՂՈՒԹԵԱՆ խումբի

Այս Շաբաթ երեկոյ, ժամը 9ին, մանկապարտէզի սրահին մէջ

Կը խօսի՝ ընկ. ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ

Նիւթ՝ «ՆԵՐԳԱՂԹԸ եւ ԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆԸ»

Մուտքը ազատ է:

---

## Պարահանդէս Անկէնի մէջ

ԴՊՐՈՑԱՍԷՐ ՄԻՈՒԹԵԱՆ ԱՆԿԷՆԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ

21 Յունուար Շաբաթ օր

Կը խնդրուի միութիւններէն եւ մասնաւորապէս պարասէրներէն նկատի ունենալ սոյն թուականը:

---

«ՍԻՓԱՆ»ի ընկերա-ճամակրական ճաւաքոյթը տեղի կ'ունենայ 18 դեկտեմբեր կիրակի, ժամը 4ին Միթիւալիթէի 2րդ յարկը:

Պիտի խօսի դերասան Ա. ՇԱՀԽԱԹՈՒՆԻ

Մեր մեծ դերասանուհի Տիկ. ՍԻՐԱՆՈՅՇի մասին

Խմբերգ, նուագ, արտասանութիւն: Ջուարճալի խաղեր, ճայկական եւ եւրոպական պարեր: Կը հրաւիրուին «Արարատ» եւ «Բիւրակն» երգչախումբերու անդամները:

Մուտքը ազատ է բոլոր ճամակիրներու ճամար:

Տախքի համար 2 ֆրանք:

---

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ

ՀԱՏՈՐ Ա.

Հիմնադրութենէն մինչեւ Օսմ. Սահմանադրութիւն (1890—1908)

Շուրջ 500 մեծադիր էջ 80 պատկերներ

Գրեց՝ Մ. ՎԱՐԱՆԴԵԱՆ

Գին՝ Ֆրանսա, Սուրիա, Ռումանիա, Պուլկարիա, Յունաստան 40 ֆր.: Ուրիշ երկիրներ՝ 50 ֆր. կամ 2 տոլար: Դիմել՝ L. Tadévossianի, դրօշակի հասցէով, 71 Ave. Kléber, Փարիզ (16):

Կը ծախուի նաեւ Յառաջի խմբագրատունը: Ապսպրանքները կանխիկ:

---

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Երիցուհի Հետիէ Միսաի Խաչերեան, կը փնտռէ իր քեռորդին՝ Ռուսդալեցի Օհան Բէլօհանեան, որ ծնած է 1903ին Այնթապի Էյնէշ գիւղը, հօր անուն՝ Աւետիս Բէլօհանեան, մօր անուն՝ Մարիամ: 1925ին եկած է Ֆրանսա: Իր հասցէն գիտցողներէն կը խնդրուի իմացնել՝ Père Hagop Boyadjian, Poste Restante, Valence, Drôme:

---

## ՄԱՍՆԱԳԷՏ ԲԺԻՇԿՆԵՐ

96 R, Rivoli, մէթ. Շաթլէ: Արմատ. եւ նոր մեթոտ, դարմ. արանց եւ կանանց մորթի, արեան՝ մաններ. հիւանդութիւն եւ վարփսի: Ամէն օր 9—12, 2—8, կիրակի 9—12:

---

Imprimerie A. DER (AGOPIAN)

Le Gérant : H. STEPHAN

17, Rue Damesme :-: PARIS (13e)

---

Ց. Հ. Դ.

## Փարիզ եւ շրջակաները

ՓԱՐԻԶԻ Իթալիի Աղբիւր Սերոբ խումբի ժողովը, այս Շաբաթ իրիկուն ժամը 8ին, 32 Ավրնիւ Կոպըլէն։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։ Ներկայանալ անդամատետրով։

## Գաւառ

ՄԱՐՍԷՅԼԼ Հ. Յ. Դ. Պատանեկան Միութեան ընդհ. ժողովը այսօր Հինգշաբթի երեկոյ ժամը 8.30ին, Գրադարան - ընթերցարանին մէջ, 49, բիւ Նասիոնալ։ կարեւոր օրակարգ։

ՄԱՐՍԷՅԼԻ «Ռոստոմ» ենթակոմիտէի ընդհ. անդամական ժողովը վաղը Ուրբաթ երեկոյ, ժամը 9ին, Պատ. Միութեան Գրադարանին մէջ, 49, բիւ Նասիոնալ։ Պարտաւորիչ ներկայութիւն։

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Պ. Պետրոս Պալըքճեան, Տէր եւ Տիկին Պետրոս Գավուքճեան եւ պարագաները իրենց շնորհակալութիւնը կը յայտնեն ամէն անոնց որոնք անձամբ, գրաւոր եւ ծաղկեպսակով ցաւակցութիւն յայտնեցին՝

ԱՅՐԻ ՏԻԿԻՆ
ՄԱՐԻԱՄ ՊԱԼԸՔՃԵԱՆԻ

դառնաղէտ մահուան առթիւ։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Երիցունի Հետիկ Մխսի Խաչերեան, կը փնտռէ իր քեռորդին՝ Ռուտվալեցի Օհան Քէլօհանեան, որ ծնած է 1903ին Այնթապի Էյնէշ գիւղը, հօր անուն՝ Ստեփան Քէլօհանեան, մօր անուն՝ Մարիամ։ 1925ին եկած է Ֆրանսա։ Իր հասցէն գիտցողներէն կը խնդրուի իմացնել՝ Père Hagop Boyadjian, Poste Restante, Valence, Drôme։

## Հրապարակային դասախօսութիւն Շավիլի մէջ

Նախաձեռնութեամբ՝ Հ. Յ. Դ. ԱՐՂՈՒԹԵԱՆ խումբի

Այս Շաբաթ երեկոյ, ժամը 9ին, մանկապարտէզի սրահին մէջ

կը խօսի՝ ընկ. ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ

Նիւթ՝ «ՆԵՐԳԱՂԹԸ եւ ԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆԸ»

Մուտքը ազատ է։

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ



ՕՐ. ԱՆԱՀԻՏ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ
ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԳԻՆԵՐՈՎ

18 Դեկտ. 1932 Կիրակի գիշեր ժամը 9ին

Salle des Saciétés Savantesի մէջ
8 Rue Danton — Metro St. Michel et Odéon

կը ներկայացուի աննախընթաց պատրաստութեամբ
Գերմանացի ծանօթ թատերագիր ՄԱՔՍ ՏՐԷՀԷՐԻ

**17 ՏԱՐԵԿԱՆՆԵՐԸ**

Տ ռ ա մ   ե ր ե ք   ա ր ա ր
եւ
ՍՄՈՒՍՆՈՒԹԵԱՆ ԱՌԱՋԱՐԿ

կատակերգ. մէկ արար — ՀԱՆՐԻ ՊՈՐՏՕԻ

կը մասնակցին՝ ՏԻԿ. ԱՆԱՀԻՏ, ՏԻԿ. ՔՆԱՐ, Պ. Պ. Լ. ՅԱՐՈՒԹ, ԼԱՔՔԱ, Գ. ՏԷՐՎԻՇԵԱՆ, եւն.

ԳԻՆԵՐԸ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ.— 15, 10 ԵՒ 5 ՖՐԱՆՔ

Տոմսերը ամէն տեղ եւ «Կավռօշ»ի մօտ

«ՍԻՓԱՆ»ի ընկերա - համակրական հաւաքոյթը տեղի կ'ունենայ 18 դեկտեմբեր կիրակի, ժամը 4ին Միւթիւալիթէի 2րդ յարկը։

Պիտի խօսի դերասան Ա. ՇԱՀԽԱԹՈՒՆԻ

Մեր մեծ դերասանուհի Տիկ. ՍԻՐԱՆՈՅՇի մասին

խմբերգ, նուագ, արտասանութիւն։ Զուարճալի խաղեր, հայկական եւ եւրոպական պարեր։ կը հրաւիրուին «Արարատ» եւ «Բիւրակն» երգչախումբերու անդամները։ Մուտքը ազատ է բոլոր համակիրներու համար։

Ծախքի համար 2 ֆրանք։

Հայ «Տրամ-Օփերէթ» խումբը
ղեկավարութեամբ
Ս. ՍՈՒՐԱԲԵԱՆԻ
մասնակցութեամբ
"ՍԻՓԱՆ"
ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ

Հայկական մեծ օփերա
ՅՈՎ. ԹՈՒՄԱՆԵԱՆԻ
**ԱՆՈՒՇ**
օփերա 4 արար 6 պատկեր

8 Յունուար Կիրակի ցերեկ
ժամը ճիշդ 2.45ին
**Maison de la Mutualité**
ՄԵԾ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ
Métro: Maubert - Mutualité

Տոմսերը այժմէն կը ծախուին սովորական տեղերը

## Թատերական ներկայացում Լիոնի մէջ

Այս Շաբաթ իրիկուն ժամը 8.45ին Emile Zola սրահին մէջ

Ղեկավարութեամբ երգչուհի-դերասանուհի ՏԻԿ. Ե. ԲԱԴԱԼԻ

կը ներկայացուի Աշուղ Ջիվանիի **ԱՇՈՒՂ ՂԱՐԻԲԸ**

Մասնակցութեամբ տեղական եւ Մարսէյլի կարող ուժերու

ԳԻՆԵՐԸ 7, 5, եւ 4 ՖՐԱՆՔ

Նոյն խաղը ՏԷՍԻՆԻ մէջ Դեկտ. 18ին, Կիրակի ցերեկ ժամը 3ին Հ. Յ. Դ. ՏԱՆ ՄԷՋ։

Հարսանիքի տեսարանին Տիկ. Ե. ԲԱԴԱԼ կը պարէ Կովկասեան պարեր։



## ԱՐԵՒԵԼԵԱՆ ՊԱՐԵՐՈՒ ՑԵՐԵԿՈՅԹ ՄԸ

ԻՇԽԱՆՈՒՀԻ ԼԷՅԼԱ ՊԵՏՐ - ԽԱՆԻ ԿՈՂՄԷ

17 Դեկտ. Շաբաթ կէսօրէն ետքը ժամը 4ին

Théâtre de l'Avenue, 5 rue de Colisée

Իշխանուհի Պետր-Խան նոր է հասած Միլանէն, ուր Scala de Milanoի մէջ մեծ յաջողութեամբ ներկայացուց Սաբայի Թագուհին։

## ՉՐՈՑՑԻ ԵՐԵԿՈՅ

Կազմակերպուած Ֆրանսահայ Կարմիր Խաչի
Ալֆորվիլի մասնաճիւղին կողմէ

Այս Շաբաթ իրիկուն ժամը 8·30ին «Հայ Ակումբ»ին մէջ
Bld. Carnot, No. 1

Ընթերցանութիւն եւ զրոյց Սասունցի Դաւիթի մասին
Կը խօսին՝ Տ· ԷԼԼԷՆ ԲԻՒԶԱՆԴ, Տ· ՀՌ· ՈՒԶՈՒՆԵԱՆ եւ ուրիշներ

Գեղարուեստական ճոխ բաժին — Մուտքը ազատ է






























Imprimerie A. DER (AGOPIAN)
Le Gérant : H. STEPHAN
17, Rue Damesme :-: PARIS (13e)

Յ.

Հ. Դ.

## Փարիզ եւ արուարձաններ

ՓԱՐԻԶԻ Իթալիի Աղբիւր Սերոբ խումբի ժողովը, այսօր, Շաբաթ իրիկուն ժամը 8ին, 32 Ավընիւ Կոպըլէն: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Ներկայանալ անդամատետրով:

## Գաւառ

### ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋ. ԿՈՄԻՏԷԻ ԴԱՍԱԽՕՍԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐԸ

ՄԱՐՍԷՅԼԻ «Աղբիւր Սերոբ» եւ «Իշխան» Ենթակոմիտէներու խառն դասախօսական ժողովը այսօր Շաբաթ երեկոյ ժամը 8.30ին, Պատանեկան Միութեան Գրադարանին մէջ (49, բիւ Նասիոնալ): Կը դասախօսէ ընկեր Ն. Ագգին:

ՍԷՆ-ԺԷՐՕՄԻ «Վրէժ» խումբի ընկերներու դասախօսական ժողովը վաղը Կիրակի ժամը 2.30ին, իրենց հաւաքավայրին մէջ: Կը դասախօսէ ընկեր Պ. Հիւսեան:

ՊՈՒԼՎԱՐ-OSSO «Վռամեան» Ենթակոմիտէի ընկերներու դասախօսական ժողովը վաղը Կիրակի, ժամը 6ին, իրենց հաւաքատեղիին մէջ: Կը դասախօսէ ընկեր Ն. Ագգին:

ՍԷՆԹ-ԱՆԹՈՒԱՆ «Ընկեր Կարօ» Ենթակոմիտէի ընկերներու դասախօսական ժողովը վաղը Կիրակի իրիկուն, ժամը 6.30ին, «Օթէլ Թէրմինիւս»ի սրահին մէջ: Կը դասախօսէ ընկեր Ստ. Միլտոնեան:

■■■■■■■■■

ՏԷՍԻՆԻ Կոմիտէն ընդհ. ընկերական ժողովի կը հրաւիրէ Տէսինի բոլոր ընկերները վաղը Կիրակի ժամը 2ին, Հ. Յ. Դ. Տան մէջ: Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն:

## ՅԵՏԱՁԳՈՒԱԾ Է

ՇԱՎԻԼԻ ՄԷՋ Հ. Յ. Դ. ԱՐՂՈՒԹԵԱՆ խումբի դասախօսութիւնը:

**Փարիզի Գրական Ակումբ** այս իրիկուն, ժամը 9ին, 131, rue Cambronne, métro Vaugirard. Զեկոյց Պ. Չիթունիէ, «Սրուանձտեանցի ժահուան քառասնամեակը»: Մուտքը ազատ է:

## Թատերական ներկայացում Լիոնի մէջ

Այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8.45ին Emile Zola սրահին մէջ

Ղեկավարութեամբ երգչուհի-դերասանուհի ՏԻԿ. Ե. ԲԱԴԱԼԻ

կը ներկայացուի Աշուղ Ջիվանիի **ԱՇՈՒՂ ՂԱՐԻԲԸ**

Մասնակցութեամբ տեղական եւ Մարսէյլի կարող ուժերու

ԳԻՆԵՐԸ 7, 5, եւ 4 ՖՐԱՆՔ

Նոյն խաղը ՏԷՍԻՆԻ մէջ վաղը, Կիրակի ցերեկ ժամը 3ին Հ. Յ. Դ. ՏԱՆ ՄԷՋ:

Հարսանիքի տեսարանին Տիկ. Ե. ԲԱԴԱԼ կը պարէ Կովկասեան պարեր:

## ՋՐՈՑՅԻ ԵՐԵԿՈՅ

Կազմակերպուած Ֆրանսահայ Կարմիր խաչի Ալֆորվիլի մասնաճիւղին կողմէ

Այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին «Հայ Ակումբ»ին մէջ

Bld. Carnot, No. 1

Ընթերցանութիւն եւ զրոյց Սասունցի Դաւիթի մասին

կը խօսին՝ Տ. ԷԼԼԷՆ ԲԻՒԶԱՆԴ, Տ. ՀՌ. ՈՒԶՈՒՆՆԵԱՆ եւ ուրիշներ

Գեղարուեստական ճոխ բաժին — Մուտքը ազատ է



## Սկաուտական հանդէս

Հ. Մ. Ը. Մ.ի Ալֆորվիլի մասնաճիւղին կողմէ: 8 նորընծայ սկաուտներու երդման արարողութիւն, այս Կիրակի, ժամը ճիշդ 2.30ին «Հայ Ակումբ»ի սրահին մէջ, 1, Bl. 'Garnot: Կը ներկայացուի «Պաշտօնս խումբալ է»: Կը մասնակցի «Բիւրակն» երկսեռ երկչախումբը, ղեկավարութեամբ Պ. Սաքօ Յակոբեանի: Մուտքը՝ ազատ է:



## ՀԱՅ ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ ՄԱՐՍԷՅԼԻ — ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՀԱՄԵՐԳ

70 ՀՈԳԻՆՈՑ ԵՐԿՍԵՌ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ ԿՈՂՄԷ

Ղեկավարութեամբ հմտաբանմօթ երաժշտագէտ Պ. Վ. ՍԱՐԳՍԵԱՆԻ

եւ մասնակցութեամբ ՀԱՅԿԱՆՈՒՇ ԹՈՐՈՍԵԱՆԻ

ՆՈՐ ԵՒ ՃՈԽ ՅԱՅՏԱԳԻՐ ԿՈՄԻՏԱՍ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԱՆՏԻՊ ԵՐԳԵՐԷՆ

Տեղի կ'ունենայ Սալօն Մասիլիայի մէջ

24 Դեկs. Շաբաթ գիշեր ժամը 9.30ին — 25 Դեկs. Կիրակի ցերեկ ժամը 3.30ին

ՄՈՒՏՔ 10, 15, 20 ՖՐԱՆՔ

Փութացէք այժմէն ապահովել ձեր տոմսերը որոնց թիւը սահմանափակ է:

կը ծախուին միութեան երկսեռ անդամներուն մօտ:

7ՐԴ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ, ԿԻՐԱԿԻ 18 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1932



Ս. ԹՈՐՈՍԵԱՆ (Փօթաշ)

## ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԹԱՏՐՈՆ

STUDIO RUDOLF սրահը, 6bis, Rue Campagne Première, Mét. Raspail

Ղեկավարութեամբ՝ Ա. ԿՈԹԻԿԵԱՆԻ եւ Ս. ԹՈՐՈՍԵԱՆԻ

Վաղը կիրակի իրիկուն ժամը 8.30ին

Առաջին անգամ ըլլալով Փարիզի մէջ կը ներկայացուի

# ՓՕԹԱՇ ԵՒ ՓԵՐԼԱՄՈՒՏՐ

Թարգմ. Յ. ՂԱՐԻԲԵԱՆ

Մօնթէկիւ կլասի ծիծաղաշատ զաւեշտին (3 արար)

3 ժամ անընդհատ ծիծաղ

Բեմի կառավարիչ՝ Ն. Նիկողոսեան Հերթ. բեմադիր Ս. Թորոսեան

Կը մասնակցին՝ Տիկիններ՝ Լաթիֆեան, Լուսիկ, Օրիորդներ Մելինէ, Գէորգեան, Պ. Պ. Անտոնեան, Գազանճեան, Թորոսեան, Լաթիֆեան, Կոթիկեան, Մեծատուրեան, Նիկողոսեան, Պերճիկ, Սրապեան եւ Սանճագ:

ՏՈՄՍԵՐՈՒ ԳԻՆԵՐ՝ 3 եւ 5 ՖՐԱՆՔ

(Սահմանափակ թիւով բեմերէ տոմսեր՝ 10 ֆրանք)

Տոմսերը նախօրօք կը ծախուին Հրանտ-Սամուէլ գրատունը, Ճաշարան Ֆլօրիա եւ սովորական վայրերը:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՍԱԼՆՈՋՈՐԻ Հայր. Միութեան Փարիզի մասնաճիւղի անդամական ընդհ. ժողովը վաղը, Կիրակի ժամը 2ին, 119 ավընիւ տ'Իթալիի մէջ, Մէթրօ Մեզօն Պլանշ: Խիստ կարեւոր օրակարգ:

ԻՍԻ-ԼԷ-ՄՈՒԼԻՆՈՅԻ Ֆրանսահայ Կարմիր Խաչի մասնաճիւղի ընդհ. ժողովը այսօր, Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին ծանօթ հաւաքատեղին: Ընկեր եւ ընկերուհիներու ներկայութիւնը պարտաւորիչ է, կարեւոր օրակարգ:

ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՈՒԻ



ԼԱՔՔԱ

# 17 ՏԱՐԵԿԱՆՆԵՐԸ

Վաղը գիշեր ժամը 9ին

**Salle des Sociétés Savantes**ի մէջ




Imprimerie A. DER (AGOPIAN)

Le Gérant : H. STEPHAN

17, Rue Damesme :-: PARIS (13e)

Յ. Հ. Դ.

## Փարիզ եւ արուարձանները

ՍԷՆ ՄԻՇԷԼԻ «Քրիստափոր» խումբի ժողովը այս Հինգշաբթի, երեկոյ ժամը 8ին, 32, Ավընիւ Կօպլէնի սրճարանին վերնայարկը: Կարեւոր օրակարգ: Ներկայանալ անդամատետրով:

























## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՍՏԱՑԱՆՔ

Վիէն, Յ. Մ.— 140:
Կոմէյ, Գ. Տ. Խ.— 50:
Լա Կարէն, Թամ.— 35:
Մարսէյլ, Գործ.— 881.60:
Սէն Թ'Էթիէն, Գործ.— 54.40:

ՆՈՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐ

Վարշաւիա, Մ. Գ.— 100:
Սկսանք ղրկել Դեկտ. 16էն:
Իսի լէ Մուլինօ, Ա. Մ.— Սկսանք ղրկել Դեկտ. 16էն:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Ներկայով կուգամ հրապարակաւ իմ սրտագին շնորհակալութիւնս յայտնել Տօքթ. Եաղուպի որ կնոջս մահացու մէկ հիւանդութիւնը բժշկական խիստ ճարտար եւ բացառիկ գործողութեամբ մը դարմանեց եւ զայն փրկեց ստոյգ մահէ մը:

Արամ Աւետիսեան

Անիէռ, 19 դեկտ. 1932




Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Damesme :-: PARIS (13e)
Le Gérant : H. STEPHAN


«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (1)

# "ՄԱԹԱ ՀԱՐԻ,,

## 1. ՓՈՐԷԼԻ ԿԱՊԵԼԱՅԻՆ ՄԷՋ

Անկարելի պիտի ըլլար գրել Լիան Սօնրէլի կենսագրութիւնը: Չկայ դէպքերու որոշ յաջորդականութիւն մը, որպէս զի այդ աշխատանքը ստանձնողը հաւաքէր ու կարգի դնէր զանոնք: Ամէն տեղ է ան — Պաթավիա, Թանկոր, Փարիզ, Մատրիտ, Լոնտոն ու յետոյ յանկարծ կը կորսուի: Այսքան միայն կարելի է ըսել իր մասին: Թերեւս անխուսափելի էին այդ անհետացումները՝ նկատի ունենալով իր վարած կեանքը:

Ճօրճ Լըմըգիւրիէն երեք տարբեր առիթներով տեսած էր զայն Փարիզի մէջ, բայց այդ հանդիպումները անցողակի ակնարկ մըն էին միայն անոր կենցաղին վրայ: Այդքանն իսկ կարելի չէ ըսել ծովակալ Կոթհօրնի հետ 1917ին Լոնտոնի մէջ իր ունեցած տեսակցութիւններուն կամ Թօրինկթըն Սքուէրի հիւրանոցին մէջ՝ Տիկին Տիւլէնձի հետ իր ունեցած կարճատեւ ծանօթութեան մասին:

Եւ սակայն, կարելի է ուրուագծել զայն շատ տարտամ կերպով եւ տալ ընդհանուր տպաւորութիւն մը որ եթէ նկարուած ըլլար կտաւի մը վրայ, պիտի գրաւէր ուշադրութիւնը՝ զարմանք յառաջ բերելով անոր ետին ծածկուած գաղտնիքներուն մասին:

×

Ճօրճ Լըմըգիւրիէն այնտեղ էր այդ իրիկունը՝ Պէրթի փողոցի այն հաստատութեան մէջ ուր Փորէլ առաջին անգամ ըլլալով բազմութեան կը ներկայացնէր Լիան Սօնրէլը:

Փորէլի հաստատութիւնը ակումբ մըն էր այն իմաստով որ ժամադրավայրն էր ամէն գիշեր միեւնոյն մարդոց — արուեստագէտներու, գրողներու եւ Մօնմարթրի թափթփուքներուն: Անոնք որ աղջիկ ունէին միասին կը բերէին: Աղջիկ չունեցող կա՞ր: Սակայն հանրային հաստատութիւն մը չէր ան, թէեւ մասնաւոր արտօնութիւն ստացած էր եւ պատասխանատու էր իշխանութիւններուն: Ուզողը ներս կը մտնէր ու կը նստէր, եթէ ազատ սեղան գտնէր:

1910ի նոյեմբերի վերջերը, իրիկուն մը Փորէլ ներկայ էր այդ երկար սրահին մէջ որուն տակը օթօպիւսի ձիերուն ախոռն էր: Ձեռքը բռնած էր ապակիէ ծնծղայ մը որուն կը զարնէր ամէն անգամ որ ըսելիք մը ունէր իր յաճախորդներուն: Երկար սրահին մէջ տարօրինակ կը հնչէր ծնծղային ձայնը եւ մարդի մը ճեղքէն ներս թափանցող արեւի բարակ ճառագայթի մը տպաւորութիւնը կը թողուր ան: Ուղեղիդ կը հասնէր նախ այդ ձայնը ինչպէս բարձրաձայն խօսակցութիւնը — ամէն մարդ բարձրաձայն կը խօսէր Փորէլի ակումբին մէջ — յետոյ աստիճանաբար կը տարածուէր ան. լռութիւն կը տիրէր, խօսակցութիւնները կը դադրէին:

Խորհրդաւոր բան չկար այս բոլորին մէջ:

Այդ գիշեր Փորէլ երեք հարուած տուաւ ծնծղային. աղմուկն ու խնդուքը մարեցան սրահին մէջ: Փորէլ յայտարարութիւն մը պիտի ընէր:

— Պարոննե՛ր, երեք շաբաթէ ի վեր կապելայ չունէինք:

Սպասեց կարծես որ մեկնութիւններ տային այդ մասին. ո՛չ ոք բերանը բացաւ: Փորէլ շարունակեց.

— Անցեալ շաբթու Մարսէյլ գացի, գիտէ՛ք:

Ներկաները սկսան խնդալ ու չկրցաւ շարունակել իր խօսքը:

Ամէն մարդ գիտէր Փորէլի կանոնաւոր բացակայութիւններուն պատճառը: Մարսէյլի մէջ ան ունէր սիրուհի մը որ չէր ուզեր Փարիզ գալ. իսկ ինք, գործը եւ կին մը ունէր Փարիզի մէջ ու չէր ուզեր Մարսէյլ ապրիլ: Ամէն անգամ որ կռիւ մը կը պատահէր տունը, Տիկին Փորէլ որ կը պահէր տոմարները եւ կը վարէր ակումբին սրճարանի բաժինը, կառքին մէջ կը նետէր իր ամուսինը եւ Կառ տը Լիոն տանելով կ'ըսէր «գնա՛» եւ համբոյր մըն ալ կը դնէր անոր այտերուն: Տիկինը կը սպասէր քարափին վրայ մինչեւ որ շոգեկառքը ճամբայ ելլէր. յետոյ կը վերադառնար Պէրթ փողոցը, պայծառութիւն մը դէմքին վրայ որ նշմարելի չէր երբեք ամուսնոյն ներկայութեան:

Երբ ծիծաղները դադրեցան, Փորէլ շարունակեց.

— Մարսէյլ գացի. Բէ տիւ Մօնտի վրայ սրճարանէ մը ներս մտայ. այնտեղ աղջիկ մը տեսայ որ կը պարէր:

Աչքերը փակեց Փորէլ. լուռ ու մունջ կեցաւ պահ մը. յետոյ մատները տանելով շրթունքներուն՝ իր սեւ մօրուքին մէջտեղէն՝ ուտելիքի մը մնացորդը դուրս քաշելու ձեւով, համբոյր մը փրցուց ու նետեց, վերը, օդին մէջ: Գիտէր այդ կեղծ շարժումներուն արժէքը. քիչ անգամ կ'ընէր այդ ձեւերը:

— Աղջիկը այդ սրճարանը բերող մարդը ինծի ըսաւ. «Ի՞նչ կուտաս, Փորէլ». ըսի «այսքան». ան ըսաւ «այսքան»: Աղջիկը կեցած, աչքերուն տակէն ինծի կը նայէր: Ցետոյ, յանկարծ, չեմ գիտեր ինչու համար, «շատ լաւ» ըսի եւ հետս միասին բերի. այստեղ է ան հիմա:

Ոչ ոք կրնար ուրանալ անոր խանութպանի աճպարարութիւնը: Իր փոքր ու մտերմական ձեւերուն մէջ, Փորէլ մեծ մարդ մըն էր:

Իր խօսքը աւարտելէ ետք, Փորէլ նայեցաւ նուագապետին եւ վեր բարձրացնելով մատները, նշան մը ըրաւ անոր: Ջութակահարները սկսան նուագել արեւելեան եղանակ մը:

Անշուշտ փորձ ըրած էին անոնք նախապէս եւ Փորէլ ու նուագապետը պէտք եղած պատրաստութիւնները տեսած էին ինչպէս միշտ: Սրահին վարի ծայրէն վարագոյրները բացուեցան: Բեմ չէր անոնց ետին ծածկուածը այլ տեսակ մը մենախուց: Բեմի յարմարութիւն չունէր չեղակի գերաններու տակ փռուած այդ սրահը:

Գետինը նստած էր աղջիկ մը՝ սրունքները խաչաձեւ: Առաջին ակնարկով Ճօրճ շատ մեղմ հետաքրքրութիւն մը ունեցաւ միայն: Վարժուած էր ան Փորէլի թատերական ցուցադրութիւններուն որոնք շատ անգամ տափակութիւններ էին:

Կրունկներէն մինչեւ մէջքը Թրքական թափանցիկ անդրավարտիք մը հագած էր ան: Մէջքէն վեր փաթթուած էր կէս — մութ, կէս — փայլուն երիզով մը զոր ահաւասիկ սկսաւ կամաց կամաց զատել իր մերկ մարմինէն: Մետաղէ շինուած ուսնոցի մը կը նմանէր այդ երիզը: Օձ մըն էր:

Թարգմ. Ժ. Մ.

(Շարունակելի)

Յ.

## Փարիզ եւ գաւառներ

Հ. Յ. Դ. ԵԻՐ. Կ. Կ.Ի ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉԸ

Հ. Դ.

խորհրդակցութեան մը համար ժողովի կը հրաւիրէ ՓԱՐԻԶԻ, ԻՍԻ-ԼԷ-ՄՈՒԼԻՆՈՅԻ, ԱԼՖՈՐՎԻԼԻ, ՄԱՐՍԷԼԻ եւ ՊՈՒԼ-ԲՈՂՈՆԻԻ Կոմիտէներէն մէկ-մէկ ներկայացուցիչ, վաղը Ուրբաթ երեկոյ ժամը 8.30ին, 32, Ave. des Gobelins, սրճարանի վերնայարկը:

ՊԵԼՎԻԼԻ «Ռոստոմ» Կոմիտէի ժողովը վաղը, Ուրբաթ երեկոյ ժամը 8.30ին, 131, Fbg. du Temple: Կարեւոր օրակարգ:

### Գաւառ

ԼԻՈՆԻ Մարմինը, սովորութեան ընդհ. ժողովի կը հրաւիրէ Լիոնի Քրիստափոր, Զաւարեան եւ Ռոստոմ խումբերու ընկերները, այս Կիրակի առաւօտ ժամը 9ին ծանօթ հաւաքատեղին: Ներկայանալ անպայմանօրէն: Բացակաները խիստ նկատողութեան կ'առնուին:

ՄԱՐՍԷՅԼԻ «Քրիստափոր» խումբի ժողովը այս Ուրբաթ երեկոյ ժամը 8.30ին, 49 Բիւ Նասիոնալ, Պատանեկան Միութեան սրահին մէջ: Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն:




Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Damesme :-: PARIS (13e)
Le Gérant : H. STEPHAN


«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (3)

# ՄԱԹԱ ՀԱՐԻ

## 1. ՓՈՐԷԼԻ ԿԱՊԵԼԱՅԻՆ ՄԷՋ

Ուրեմն Փրանսուհի մըն էր ան. շատ զարմացաւ: Ո՛չ միայն անոր տարազն ու ներկայացումը, այլ անոր դէմքին արտայայտութիւնը ենթադրել տուած էին իրեն թէ աղջիկը արեւելեան աշխարհէն կը կրէր իր երակներուն մէջ:

— Աղտոտ, փոքր սրճարան մըն էր, կը պատմէր Փորէլ երբ ձորճ մօտեցաւ: Սիրուհիս ըսաւ ինծի. «Գնա Լառօքի սրճարանը, բայց երկար չմնաս այնտեղ»: Գացի. աղտոտ տեղ մըն էր. գետինը ծածկուած էր աւազով որ կը կրճտար ոտքերուդ տակ. ծովերուն վրայ աշխատող մարդիկ կային այնտեղ. օղեր ունէին իրենց ականջներէն կախուած. սեւամորթներ, դեղին մարդիկ, ամէն տեսակէն ալ կար. բոլորը կը թքնէին տախտակամածին վրայ եւ իրենց ոտքերով կը սրբէին. քաղաքավար մարդ քիչ կար: Սրճարանը նուագախումբ չունէր. մարդ մը նստած էր միայն դաշնակին առջեւ, սրահին մէկ անկիւնը: Ծխախոտ կը ծամէր ու կը նուագէր միաժամանակ: Դրան մէջէն երեւցաւ Լեան Սոնրէլը. յայտարարութիւն չկար: Անիկա նստաւ աւազին վրայ և սկսաւ իր մարմինին վրայէն քակել օձը, ինչպէս տեսաք քիչ առաջ: Քանի մը հոգի դարձան ու նայեցան: Դաշնակահարը կը նուագէր եւ կը թքնէր միշտ. իր թուքը աղջկան գլխուն վրայ կ'անցնէր: Մերկ էր աղջիկը, մօրէ մերկ. ոտքի ելաւ եւ համբուրեց սողունը, ինչպէս քիչ առաջ: Քանի մը հոգի եւս սկսան դիտել: Տեսած էին այդ տեսակ բաներ՝ Արեւելքի մէջ: Լեան ո՛չ միայն գեղեցիկ էր, այլ եւ բան մըն ալ աւելի: Բարձերուն վրայ գտնուած դէմքերուն չէր նմաներ անոր, գիտէք, եւ յետոյ...

Բայց այդ մարդիկը աւելի գեղեցիկ կիներ տեսած էին Փորթ Սայիտի, Քօլօմպօյի կամ Շանկայի մէջ: Դարձան, նայեցան ու յետոյ անդին դարձուցին իրենց աչքերը: Միայն մէկ հոգի անցաւ սրահին մէջտեղէն եւ եկաւ աղջկան մօտ. գիտէք, տեսած էր անտեսանելին... Բայց ան ալ չէր հասկնար... Նայեցաւ աղջկան երեսին եւ սեղմեց անոր ոտինքներուն ծայրերը:

Փորէլ ընդհատեց իր խօսքերը եւ յետոյ շարունակեց.

— Աստուած իմ, տեսած էի կայծակը որ կ'իյնայ ծառի մը վրայ. ծառը պատառ պատառ կ'ըլլայ ու կը մեռնի աչքիդ առջեւ. այս մարդն ալ մեռաւ: Աղջիկը որ բռնած էր սողունին վիզէն, անոր գլուխովը ուժգին հարուած մը տուաւ մարդուն բերնին. արիւն եկաւ օձին բերնէն ու մարդուն շրթունքներէն: Ա՛լ հոն չէր աղջիկը. դուռը գոցուեցաւ ուժգնօրէն. ամէն մարդ ետեւ դարձաւ:

Դաշնակահարէն զատ մարդ չէր մընացած: Դաշնակահարը սկսաւ նուագել քիչ մը աւելի բարձր ու երգել. իսկ մարդը այնտեղ էր բերանը արիւնով լեցուն:

Փորէլ կեցաւ եւ իր չուրջը նայեցաւ: Առաջին անգամն էր որ լսեցին անոր աներեւութացումներուն մասին: Փորէլ խմեց գարեջուրը՝ գաւաթին վրայէն սրահին մէջ պտտցնելով իր նայուածքը: Տեսաւ իր չուրջիններուն հետաքրքրութիւնը. աւելին կ'ուզէին լսել ու շարունակեց.

— Մօտս կանչեցի Պ. Լառօքը եւ ըսի. «Դուն գործի մարդ մը կ'երեւաս»: Հասկցաւ միտքս ու գլխ տարաւ ներսը սենեակ մը. հոն էր աղջիկը՝ Լեան Սոնրէլը: Վանդակի մէջ դրուած բան մըն էր կարծես. ոտքերը գետնին զարկաւ, բայց յանկարծ հանդարտեցաւ ու եկաւ մօտիկ ընել: Հարցուցի Լառօքին թէ ո՛ւրկէ գտած էր զայն: Ըսաւ որ Փօնտիշէրիէն եկող նաւէ մը դուրս ելած էր ան: Աղջիկը գլխու նշանով մը հաստատեց: Երրորդ կարգով ճամբորդած էր: Զաւակ մը ունէր ու կը բնակէր Մարսէյլի վարնոց թաղերը՝ սենեակի մը մէջ: Ամէն անգամ որ Լառօքի տեղեկութիւնները ճիշդ էին, աղջիկը գլխու նշան մը կ'ընէր. երբ սխալ բաներ ըսէր ան, կը քաշէր անոր թեւէն: Կարծես համր էր, թէեւ ես իմացայ իր բառերը այդ մարդուն հետ՝ սրճարանին մէջ. եւ ի՛նչ ձայն... Բայց երբ հարցուցինք թէ ի՞նչ կ'ընէր Փօնտիշէրիի մէջ, պատասխան չտըւաւ: Երբ հարցուցինք զաւակին մասին, փակեց շրթունքներն ու աչքերը եւ իր դէմքը ա՛լ գոց դուռ մըն էր կարծես: Յետոյ հարցուցի Լառօքին թէ որքան կ'ուզէր. ըսաւ «այսքան». ես ըսի «այսքան». գլուխը թօթուեց ան եւ ըսաւ «այսքան»: Յետոյ տեսայ որ աղջիկը աչքերը բացած ինծի կը նայէր: Ձեմ կրնար նկարագրել: Այնպէս մը զգացի որ կարծես թէ դումարը արժէք չունէր ինծի համար եւ ըսի. — Շատ լաւ: Դուրս եկայ ու վերադարձայ սիրուհիիս մօտ:

×

Փորէլի կապելան յաճախորդ հրաւիրելու համար մասնաւոր նշանագիր մը չունէր: Սեւ դուռ մը կար մոխրագոյն պատի մը մէջ: Կը հրէիր դուռը ու կը մտնէիր: Աւելի դրաւիչ չէր անոր ներսը: Մութ ճամբայ մը՝ շէնքին տակ, կ'երկարէր վար, դէպ ի ախոռին բակը: Կաղի լապտեր մը անդիի ծայրէն աղօտ կերպով կը լուսաւորէր խորտուբորտ քարերով ծածկուած այդ ճամբան: Ա՛լ կը գտնէիր ուղղութիւնդ. այդքան: Չէիր տեսներ աղբոտ ջրակոյտերը: Բակին միւս կողմը խարխուլ, փայտաշէն եւ սանդուղի մը աստիճանները յիշեցնող շէնք մը, որ կ'առաջնորդէր քեզ ախոռին վրայ հաստատուած Փորէլի կապելան, ներդաշնակ էր ընդհանուր շրջապատին: Այդ շրջապատին աններդաշնակ չէր նաեւ ախոռին կենդանիներուն բար... բայց ոչ վատառողջ հոտը:

Անշուշտ սրճարանը յաճախողները չէին հետաքրքրուեր անգամ ձիերով բաց ի, թերեւս կրէկուառէն որ կը նկարէր զանոնք: Այնպէս որ ատոր... կութիւն անգամ չէին ըներ ... ներկայութեան: Փորէլի կապելան ... նոյնացած էր իրենց մտքին մէջ, ... աղբահոտ մթնոլորտին հետ. յատկանշական էր նաեւ աղմուկը այդ շրջապատին: Երբ ձիերը կը զարնէին ... րենց ոտքերը, առտուան մօտ, սալայատակի քարերուն, անոնց հանած ձայնը կ'ամբողջացնէր պատկերը: Սա վորական է այդ բանը բոլորը վայրերուն համար որոնք իրենց յատուկ դրոշմ մը ունին: Տրլէն որ կը նար յանդիր չինել, քիչ մը երաժիշտ էր ու քիչ մըն ալ խենդ, երգ մը շինած էր այդ ձայնին վրայ: Գիտէք թէ ձին երբ կը սկսի ոտքերը գետնին զարնել գիշերը, ի՛նչ կանոնաւոր ... ներդաշնակ հարուածներ կ'իջեցնէ:

Թարգմ. Փ. Մ.

(Շարունակելի)

գեղեցկութեան թագուհի ընտրուելէ յետոյ, Քէրիման Հալիս հանըմ Փարիզի մէջ ծանօթացաւ Անգլեւպարսիկ Քարիւղի ընկերութեան բաժնետէրերէն եւ աշխարհի ծանօթ հարուստներէն միլիառատէր Գալուստ էֆ. Կիւլպէնկեանի հետ։ Կիւլպէնկեան էֆ. մեր նախկին հայրենակիցներէն մէկն է։ Շատ գոհ մնացած ըլլալով ընտրութեան արդիւնքէն, ուզած էր իր ապարանքին մէջ հացկերոյթ մը տալ Քէրիման հանըմի եւ հօրը. բայց թագուհին եւ հայրը չէին կրցած հրաւէրին պատասխանել եւ նամակով մը շնորհակալութիւն յայտնած էին։

Երէկ Տիկ. Կիւլպէնկեանէն նամակ մը եկաւ Քէրիման հանըմի։ Տիկինը կը յայտնէ թէ նոր տարուան առթիւ գոհարեղէն մը կը նուիրէ իրեն եւ կը խնդրէ որ ընդունի։ Քէրիման հանըմ նամակով մը շնորհակալութիւն յայտնած է։

Մեր քննութեանց համաձայն, գոհարեղէնը տասը հազար ոսկի կ'արժէ եւ շինուած է Փարիզի ոսկերիչներուն կողմէ։

## 1933ը ճակատագրական տարի՝ Գերմանիոյ համար

Գոլպատեայ Սաղաւարտակիրներու նախագահը կոչ մը ուղղեց շարքերուն, նոր տարուան առթիւ։ Կոչը կ'ըսէ.

— 1933ի տարեմուտին, խօսք ուղղելով Գոլպատեայ Սաղաւարտակիրներու իւրաքանչիւր ընկերոջ, կ'ըսեմ. — Ամուր կեցիր երկաթի պէս, որովհետեւ կը մօտենայ վճռական տարին։ Հիմա է որ պէտք պիտի ունենանք Գերմանիոյ ազգային բոլոր ուժերուն։ Ան որ կը կարծէ թէ Գոլպատեայ Սաղաւարտին կարծր, խոհուն եւ գերազանց նկարագիրը ոչինչ ունի վիպաշունչ, թող չվարանի եւ երթայ մնայ ուրիշ աւելի խայտաբղէտ դրօշներու։ Բայց թող հիմակուընէ երթայ, թող երթայ դեռ ճակատամարտը չսկսած։ Պայքարի պահուն, հարկ է պաշտպանել իր դիրքը եւ կռուիլ մինչեւ յաղթանակ։ 1933ը վճռական տարին է։ Ի սէր Գոլպատեայ Սաղաւարտի պատիւին, հարկ է ապացուցանել թէ մենք ոչ միայն 14 տարի խօսած ենք ներքին եւ արտաքին փրկութեան համար, այլ եւ գիտենք դժնդակ աշխատանքով մը շահիլ այդ փրկութիւնը։

## Ոսկի ոսկոյին հազար տախն

«Հորիզոն» կը գրէ (18 դեկտ.) .— Առջի օրուընէ ի վեր սկսած ազգ. դրամանիշի նոր անկումը երէկ եւս շարունակուեցաւ։ Այս անկումը կը վերագրուի՝ երկու օրէ ի վեր եղած խնդրանքներու շատութեան եւ օտար դրամներու սակաւութեան։

Երէկ, օտար դրամները կը ներկայացնէին հետեւեալ գիները. — Տոլար 205, թուղթ ստերլին 670, ոսկեդրամ ստերլին 1000, թրք. ոսկի 910 եւ Նափոլէոն 800 տրախմի։

⁂ Վարչապետ Պ. Ցալտարիս յայտարարեց, թէ որոշուած է անողոք կերպով ճզմել ազատ շուկան եւ հոն գործող շահադէտները, — ճզմել՝ եթէ նոյն իսկ զոհեր տրուին։ Կառավարութիւնը չի կրնար հանդուրժել կարգ մը մարդոց ընթացքին ազատ շուկային մէջ, քանի որ անոնք կը գործեն ուղղակի երկրին շահերուն դէմ։

## Բացուած է բաժանորդագրութիւնը «ՀԱՅՐԵՆԻՔ» Ամսագրի

ՆՈՅԵՄԲԵՐ 1 — ՓԵՏՐՈՒԱՐ 1

ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԵՑԷՔ, ՆՈՒԻՐԵՑԷՔ, ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐԵՑԷՔ

ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆԸ ԿԱՆԽԻԿ

«ՀԱՅՐԵՆԻՔ» ԱՄՍԱԳԻՐ, Տարեկան Բաժնեգին 5 տոլար

«ՀԱՅՐԵՆԻՔ» ԱՄՍԱԳԻՐ եւ ՕՐԱԹԵՐԹը միասին 10 տոլար

«ՀԱՅՐԵՆԻՔ» Ամսագիրը հայ իրականութեան ամենափայլուն հանդէսն է, ժամանակակից մեր լաւագոյն եւ կարողագոյն գրողներուն։

Իր գրական եւ քաղաքական բաժինները անհրաժեշտ են հայ կեանքի մէջ։

Իր կանոնաւոր հրատարակութիւնը եւ տեւական կեանքը երեւոյթ մըն է անցեալ ու ներկայ մեր նման ձեռնարկներու կողքին։

Իր ծաւալը կը գէ կ'անցնի նախընթաց փորձերուն։

Իր գրական բաժինը մասնաւոր արժանացած է ամենաջերմ գնահատութեան։

Մեր քաղաքական — ընկերային կեանքին նուիրուած էջերը հարուստ ամբարանոց մըն են ներկայի եւ ապագայի համար։

«Հայրենիք» Ամսագիրը վստահելի եւ ապահով մտաւոր առաջնորդ մըն է, մշտապէս սեղանի վրայ բազմող բարեկամ մը, ունէ ատեն նոյն եւ հարազատ արտայայտութիւնն ունեցող ընկեր մը։

Նոր տարեշրջանի բաժանորդագրութեան ներկայ քէմփէյնին առթիւ «Հայրենիք» Ամսագրին իրենց բաժանորդագրութիւնները նորոգողներուն նուէր պիտի ստանան՝

Ժ Ո Ղ Ո Վ Ա Ծ Ո Ւ Մ Ը

որ պիտի պարունակէ Խորհրդ. Հայաստանի եւ արտասահմանի մեր լաւագոյն գրողներու ամէնէն ընտիր, կարճ, համով հոտով պատմուածքները, որոնք պիտի ըլլան ընթերցանութեան ճշմարիտ խնճոյք մը եւ պիտի ունենան տեւական արժէք մեր գրադարաններուն մէջ։

ԱՄՍԱԳՐԻ ՆԻՒԹԵՐՈՒ ՑԱՆԿ

Այս ժողովածուէն զատ, Ամսագիրը պիտի հրատարակէ վերջին տասը տարուան ընթացքին «Հայրենիք» Ամսագրին մէջ երեւցած նիւթերու ցանկը, այբուբենական կարգով, հեղինակներու անուններով եւ թէ նիւթերու մասնաւոր դասաւորումով։ Նիւթերու ցանկն ալ արժէքաւոր գործ մըն է, որ կը դիւրացնէ ընթերցողներու կատարելիք աշխատանքը եւ պրպտումները։

Հ. Յ. Դ. ԴԻՒԱՆԻ ԹՂԹԵՐԸ

«Հայրենիք» Ամսագիրը յառաջիկայ տարեշրջանին պիտի հրատարակէ բացի իր սովորական աշխատակիցներու գրութիւններէն, մեր ժամանակակից պատմութիւնը շօշափող նոր փաստաթուղթեր, քաղուած Հ. Յ. Դաշնակցութեան Ժընեւի դիւանատունէն։ Ասոնք կը ներկայացնեն մեծ շահագրգռութիւն։

ԱՄՍԱԳՐԻ ԲԱՑԱՌԻԿ ԹԻՒ

Դարձեալ յառաջիկայ տարուան ընթացքին Ամսագիրը պիտի հրատարակէ բացառիկ թիւ մը, մեր սովորական եւ լաւագոյն գրողներուն աշխատակցութեամբ իր տասնամեակին առթիւ։

Հայրենակից բաժանորդներ,

Պահ մը կ'անդրադառնա՞ք թէ ո՛րչափ չնչին բաժնեգինի մը փոխարէն ձեզի կը տրուի այս հոյակապ ամսագիրը։ Ամերիկեան նման հանդէսները անգամ աւելի սուղ են։

Ձեր եւ մեր գրական, ընկերային եւ քաղաքական փոխադարձ շահերը կը պահանջեն որ ոչ միայն վերանորոգէք ձեր բաժանորդագրութիւնները, այլ եւ ջանաք յանձնարարել ձեր բարեկամներուն եւ ծանօթներուն, որ բաժանորդագրուին, նուիրեն եւ տարածեն զայն։

Այս անակնկալութիւնը մեր բարոյական իրաւունքն է։

Հարիւր եօթանասուն եւ վեց էջերէ բաղկացած այս պատկառելի հանդէսը կը մատուցուի ընթերցող հասարակութեան միմիայն տարեկան ՀԻՆԳ ՏՈԼԱՐԻ փոխարէն։



## ՆՈՒԷՐԱՏՈՒՓ

ՍՏԱՑԱՆՔ

Տէսին, Ս. Բ.— 5։
Բան, Վ. Գ.— 35։
Մարսէյլ, Խ. Ն.— 70։
Պոնտի, Գ. Պ.— 150.
Սէն Ժէրմէն ան Լէյ, Տիկ. Ե. Տ. Օ.— 60 ֆրանք.
Գրոն, Զազ.— 70։
Գոլոմպ, Փաթ.— 35։
Պէքոն, R.— 70։
Մարսէյլ, Գործ.— 1031.60։
Փիէոֆէօ, Վար.— 50։
Մարսէյլ, Ֆ. Եէն.— 100։
Մարսէյլ, Ֆ. Պէլ.— 30։
Թուլուզ, Խազ.— 35։
Մարսէյլ, Պ. Փ.— 10։

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ

Սէն Կրասիէնի եւ Արնուվիլի Հայ Կաթողիկէ Որբուհեաց տնօրէնութիւնը երախտագէտ շնորհակալութեամբ ընդունած է հետեւեալ դրամական նպաստները Օր. Էլիզ Իսկէնտէրի յուղարկաւորութեան առթիւ։

200 ֆր. Արնուվիլի Հայ Կաթողիկէ գաղութէն, 100 ֆր. Տէր եւ Տիկին Գրիգոր Հէքիմեանէ, 50 ֆր. Տիկին Բիզարէ, 75 ֆր. Տէր եւ Տիկին Գաբիյեօնէ։

## Հ. Մ. Ը. Մ.Ի ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

**28 Յունուար Շաբաթ գիշեր,** Hôtel Moderneի հոյակապ սրահներուն մէջ Place de la République

Ձրի յայտագիր — Պարի եւ Ծպտեալներու մրցումներ — Երկու մեծ նուագախումբ — Ղեկավարութեամբ Պարի Փրոֆէսէօր Պ. ԵՂԻՄՈՒՐԵԱՆԻ

ԾԱՆՕԹ.— Ծպտեալները պարտաւոր են ներկայացնել ափորները մրցումին կարենալ մասնակցելու համար:



## Ով է Թիմուրթաշ

Հեռագիրները կը հաստատեն Պարսկաստանի պալատական նախարար Թիմուրթաշի հրաժարումը կամ պաշտօնանկութիւնը, որ մեծ տպաւորութիւն գործած է:

Պ. Թիմուրթաշ Շահին ամէնէն մտերիմ եւ ազդեցիկ խորհրդականն էր տասը տարիէ ի վեր եւ իրական վարիչը երկրին քաղաքականութեան: Սերած՝ մեծահարուստ գերդաստանէ մը, զինուորական կրթութիւնը ստացած էր Ռուսաստանի մէջ: Համոզումով հակառակ էր անգլիական քաղաքականութեան: Զինուորական ասպարէզին մէջ մտերմացաւ Շահին հետ որ իրեն յանձնեց նոյն իսկ իր զաւկին կրթութիւնը: Նուրբ դիւանագէտ է եւ քաջածանօթ՝ եւրոպական գլխաւոր լեզուներու: Յաճախ կ'երթեւեկէր Մոսկուա, Պերլին, Լոնտոն եւ Փարիզ:

### ՍԱՀՄԱՆԷՆ ԴՈՒՐՍ

Սահմանէն դուրս հանուեցաւ ռումանացի պարուհի մը, Օր. Ալիս Պատեան, որ տուն-տեղ եղած էր Փարիզի ավնուապետական մէկ թաղին մէջ: Լաւ կը հագուէր, ձեռք-ձեռք հագուստ ապսպրած էր, մեծ մասը ապառիկ: Անցագիրն ալ կանոնաւոր էր, բայց աշխատելու իրաւունք չունէր. մինչդեռ պայմանաւորուած էր մօտերս բեմ ելլելու: Ոստիկանները արթնցուցին քնացած պահուն, եւ սահմանէն դուրս հանեցին վարչական եղանակով:

Տիկինը բողոքած է այս բացառիկ խստութեան դէմ:

### ԵՐԵՔ ԱՄԻՍ ԲԱՆՏ՝ ԱՒԵՏԱՐԱՆԸ ԳՈՂՆԱԼՈՒՆ ՀԱՄԱՐ

Գրած էինք թէ ոստիկանութիւնը ձերբակալած է էնիտեան անուն Հայ մը, որ ամբաստանուած էր թէ 1931 յուլիս 27ին Ժոռժ Պիզէ փողոցի յունական եկեղեցիէն գողցած է թանկագին աւետարան մը, արծաթ սկիհ մը եւ հաղորդութեան յատուկ դգալ մը:

Դատավարութիւնը տեղի ունեցաւ առջի օր, եւ ամբաստանեալը դատապարտուեցաւ երեք ամիս բանտարկութեան:

Մանրամասնութիւնները՝ վաղուան թիւով:

### ԿԵՂԾ ՖՐԱՆՔ ՔՇԱԾ ԷՐ

Միեւնոյն օրը, հինգ տարի բերդարգելութեան դատապարտուեցաւ Ֆրանսացի մը, Ֆրանսուա Պուտրօ, որ տասը ֆրանքնոցներ քշած էր: Իր մեղսակիցները, որոնք չեն գտնուած, վերջերս վիրաւորած էին իր կինը եւ կը սպառնային իրեն, որպէս զի լռութիւն պահէ:

ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ սկսաւ կրճատել պետական պաշտօնեաները: «Իզվեստիա» կը գրէ թէ Ուկրայնայի մէջ կրճատումները եղած են 38 առ հարիւր: Միայն Խարքովի մէջ արձակուած են 461 պաշտօնատարներ, իսկ 777 հոգի՝ Ուկրայնայի կեդրոնական վարչութիւններէն:

## Փարիզ եւ շրջակաները

Յ.  Հ. Դ.

ԻՍԻ-ԼԷ-ՄՈՒԼԻՆՈՅԻ «Զաւարեան» Կոմիտէն ժողովի կը հրաւիրէ վռամեան, Մշօ, Մուրատ եւ Արխունեան խումբերը այս Ուրբաթ երեկոյ ժամը 8.30ին Ակումբին մէջ:

### Գաւառ

ԼԻՈՆԻ ՄԱՐՄԻՆԸ ընդհ. անդամական ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ երեկոյ ժամը 8.30ին ընկեր Քէնտիրեանի ճաշարանը: Պարտաւորիչ ներկայութիւն: Ներկայանալ անդամատետրով:

## Ընտանեկան խնջոյք Նոր Տարուոյ առթիւ

նախաձեռնութեամբ՝

Հ. Յ. Դ. ԼԻՈՆԻ ՔՐԻՍՏԱՓՈՐ, ԶԱՒԱՐԵԱՆ եւ ՌՈՍՏՈՄ ԽՈՒՄԲԵՐՈՒ եւ հովանաւորութեամբ՝ ԼԻՈՆԻ ՄԱՐՄԻՆԻՆ

Այս Շաբաթ իրեկոյ ժամը 8.30էն մինչեւ առաւօտ

Ընկ. ՔԷՆՏԻՐԵԱՆի ճաշարանը, 40 rue Pierre Corneille

Կը Նախագահէ՝ ընկ. ԱՅՎԱԶԵԱՆ Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ

### ԿԱՐԵՒՈՐ

16 էջնոց գիրքի փոխան (փայլուն թուղթ, տպագրութիւն, կազմ, եւ փոքրի ծախք միասին) կը պատրաստենք 175 ֆրանքի: Կը ղրկենք նմոյշ եւ մանրամասնութիւն: Երաշխաւորութիւն յանձնարարութեան տառացիօրէն գործադրութեան: Դիմել՝ Տպարան ՆՈՐ ՕՐ, 20, A. Voulis, Athènes, Grèce.

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՊԷՐՊԷՐԵԱՆ նախկին Սանուց Միութեան ճաշկերոյթը տեղի կ'ունենայ ամսոյս 30ի ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, «Ֆլօրիա» ճաշարանը, 61, Rue Mr. le Prince, մէթրօ՝ Օտէօն կամ Սէն-Միշէլ:

Օր. Մաննիկ Պէրպէրեանի սիրայօժար մասնակցութիւնը առիթ համարելով կը հրաւիրուին բոլոր սաները եւ համակիրները. կը խնդրուի վերաքիշեալ հասցէին երկտողով մը իմացնել յանձնախումբին.—

Association des Anciens Elèves du College Berberian.



### ՄԱՍՆԱԳԷՏ ԲԺԻՇԿՆԵՐ

95 R. Rivoli, մէթ. Շաթլէ: Արմատ. եւ նոր մեթոտ, զարմ. արանց եւ կանանց մորթի, արեան՝ ձեռներ, հիւանդութիւն եւ վարիսի: Ամէն օր 9—12, 2—8, կիրակի 9—12:

Imprimerie A. DER (AGOPIAN)
17. Rue Damesme :-: PARIS (13e)
Le Gérant : H. STEPHAN

## ՇՔԵՂ ՊԱՐԱՆՑԻԿ – ՑԵՐԵԿՈՅԹ

### ՀԱՅԿ. ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀ. ՄԻՈՒԹԵԱՆ

Փարիզի մասնաժողովին կողմէ

Նախագահութեամբ՝ Պ. Գ. ՆՈՐԱՏՈՒՆԿԵԱՆԻ

8 Յունուար Կիրակի, կէս օրէ վերջ ժամը 14էն մինչեւ կէս գիշեր Շան զ'Էլիզէի սրահներուն մէջ

**79, Ave. des Champs Elysées (Paris 8)**

**Métro: Champs Elysées**

Գեղարուեստական բաժին: Եւրոպական պարեր:

Նուագախումբ ղեկավարութեամբ Պ. **PIZZORO**ի

Մուտք՝ 25 ֆրանք

## Դպրոցական հանդէս Կաղանդի առթիւ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ ՇԱՎԻԼԻ ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶԻ ԿՈՂՄԷ

Այս կիրակի, կէս օրէ վերջ ժամը 2.30ին **Salle Patin**ի սրահին մէջ

**114, Grand' Rue - Chaville**

կը ներկայացուի՝ «ԶԱՎԱԼԼԸՆ»

Հայկ. երգեր եւ պարեր, նուագ, մանկական արտասանութիւններ եայլն.:

Մեներգ Օր. Ի. ՏԱՅԵԱՆԻ կողմէ

Մուտք՝ **3** ֆրանք

Հաղորդակցութեան միջոց.— Port St. Cloudէն առնել 1 թիւ հանրակառքը եւ իջնել Ancienne Mairie:

## ՏՕՆԱԾԱՌ

ՄԱՐՍԷՅԼԻ ՊՈԼՍԵՑԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ

7 ՅՈՒՆՈՒԱՐ ՇԱԲԱԹ ԵՐԵԿՈՅ ԺԱՄԸ 9ԷՆ ՄԻՆՉԵՒ ԱՌԱՒՕՏ

**Rond-Point du Prodo, Château des Fleurs**ի սրահներուն մէջ

գեղարուեստական բաժին, նուագահանդէս, «Թոմպոլա»:

Պար եւ տղայոց նուէրներու բաշխում:

ՄՈՒՏՔ.— Անդամներու՝ ձրի: — Ոչ-անդամներու՝ 10 ֆրանք: — Մինչեւ 10 տարեկան տղոց մուտքը ազատ է:— Ոչ Պոլսեցիներ կրնան մասնակցիլ:

ԾԱՆՕԹ.— Միութեանս տարեկան պարահանդէսը 1933 փետրուար 25ին: Բոլոր Միութիւններէն կը խնդրուի նկատի ունենալ այդ թուականը:

կը հաղորդէին թղթատար աղաւնիներու միջոցաւ, որոնք Օտեսա կ'երթային։ Այս միջոցով բազմաթիւ զինուորական փաստաթուղթեր եւ ուրիշ գաղտնի տեղեկութիւններ ղրկուած էին Ռուսաստան։ Ոստիկանութիւնը յառաջ տանելով քննութիւնները, խուզարկութիւն կատարեց ամայի տան մը մէջ, որ իբրեւ թաքստոց կը ծառայէր։

Այստեղ բռնուեցան Սփորխի եղբայրը եւ Ռուս մը, որոնք պահուած էին հին փուռի մը մէջ։ Ասոնք սուրհանդակներ էին, որոնք գետը անցնելով, տեղեկութիւններ կը տանէին։ Ձերբակալուեցաւ նաեւ կին մը, ինչպէս եւ ռումանական բանակին յիսնապետ մը, որ նմանապէս թղթատարի պաշտօն կը կատարէր։

Թերթերը կ'ըսեն թէ լրտեսական ամենակարեւոր գործն է այս։ Փաստաթուղթերէն մէկուն վրայ նշանակուած էին Պեսարապիոյ բոլոր խմբագիրներուն անունները։

### ՀԱՅ ՄԸ ԱՆՁՆԱՍՊԱՆ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Մարսէյլէն կը հեռագրեն թէ հայ բանուոր մը, Կիւլիամեան Վահան, որ կը բնակէր Սէնթ-Ան փողոցը, փորձեց անձնասպան ըլլալ, 52 մեդր բարձրութեամբ կամուրջէ մը ծով նետուելով, հին նաւահանգիստին մէջ։ Կարելի եղաւ փրկել երիտասարդը եւ փոխադրել Օթէլ Տիէօ հիւանդանոցը, ուր շատ ծանր գտան իր վիճակը։

*ՄԻՆՉԵՒ ՀՐԱԲՈՒԽԻՆ ԲԵՐԱՆԸ.*— Իտալացի փրոֆէսէօր Փիրնէր յաջողեցաւ մտնել Սթրոմպոլի հրաբուխին խառնարանը։ Գիտնականը անկիզելի նիւթէ շինուած հագուստ մը հագնելով եւ նոյնճան անկիզելի պարանի մը կապուելով, սահեցաւ մինչեւ բոցավառ լաւան։ Հեղձամահ չըլլալու համար, միասին առած էր «օքսիժէն»ի կազմած մը։

*ՆՈՐ ՇԱՐԺ ՍԵԼԱՆԻԿԻ ՄԷՋ.*— Աթէնքէն կը հեռագրեն դեկտ. 27 թուականով.— Երկրաշարժի բուռն ցնցումներ զգացուեցան այսօր, Սելանիկի եւ ամբողջ շրջանին մէջ։

800 *ԶՈՀ՝ ԾՆՈՒՆԴԻ ԱՌԹԻՒ.*— Նիւ Եորքէն կը հեռագրեն թէ՝ Ծնունդի տօնին առթիւ, 311 հոգի մեռան եւ 500 հոգի վիրաւորուեցան, ինքնաշարժի արկածներու հետեւանքով։ Միայն 11 հոգի կան որ խեղդուած են, իսկ 8 հոգի՝ երկաթուղիի արկածներու զոհ գացած։

---

Յ. Դ.

## Փարիզ եւ արուարձաններ

Հ. Դ.

*ԻՍԻ-ԼԷ-ՄՈՒԼԻՆՈՅԻ «Զաւարեան» Կոմիտէն ժողովի կը հրաւիրէ վռամեան, Մջօ, Մուրատ եւ Արղութեան խումբերը վաղը Ուրբաթ երեկոյ ժամը 8.30ին Ակումբին մէջ։*

### Գաւառ

*ԼԻՈՆԻ ՄԱՐՄԻՆԸ ընդհ. անդամական ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները վաղը Ուրբաթ երեկոյ ժամը 8.30ին* ընկեր Քէնտիրեանի *ճաշարանը։ Պարտաւորիչ ներկայութիւն։ Ներկայանալ անդամատետրով։*

---

## Ընտանեկան խնջոյք Նոր Տարւոյ առթիւ

նախաձեռնութեամբ՝

*Հ. Յ. Դ. ԼԻՈՆԻ ՔՐԻՍՏԱՓՈՐ, ԶԱՒԱՐԵԱՆ եւ ՌՈՍՏՈՄ ԽՈՒՄԲԵՐՈՒ*

եւ հովանաւորութեամբ՝ *ԼԻՈՆԻ ՄԱՐՄԻՆԻՆ*

Այս Շաբաթ իրեկոյ ժամը 8.30էն մինչեւ առաւօտ

*Ընկ. ՔԷՆՏԻՐԵԱՆի ճաշարանը,* 40 rue Pierre Corneille

*Կը Նախագահէ՝ ընկ. ԱՅՎԱԶԵԱՆ Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ*

---

## Դպրոցական հանդէս Կաղանդի առթիւ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ ՇԱՎԻԼԻ ՄԱՆԿԱՊԱՐՏԵԶԻ ԿՈՂՄԷ

*Այս կիրակի, կէս օրէ վերջ ժամը 2.30ին* **Salle Patin***ի սրահին մէջ*

**114, Grand' Rue - Chaville**

կը ներկայացուի՝ *«ԶԱՎԱԼԼԸՆ»*

Հայկ. երգեր եւ պարեր, նուագ, մանկական արտասանութիւններ եւյլն.։

*Մեներգ Օր. Ի. ՏԱՅԵԱՆԻ կողմէ*

*Մուտք՝* **3 ֆրանք**

*Հաղորդակցութեան միջոց.*— Port St. Cloudէն առնել 1 թիւ ճանրակառքը եւ իջնել Ancienne Mairie։

---

## Ընտանեկան խնջոյք

*Իզմիտցիներու «Իրերօգնութեան Միութիւն» տարեկան ընտանեկան խնջոյքը 8 Յունուար կէս օրէ վերջ ժամը 2էն մինչեւ 10,* 13 rue Passet, *Լէօն Հիլանեանի ճաշարանին վերնայարկի սրահը։ Ճոխ պիւֆէ, Հայկական պարեր եւ անակնկալներ, զուտ հայկական միջավայր։ Կը նախագահէ* Պ. Յ. Գազազեան։

---

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր եւ Տիկին Արմենակ Խրիմեան, Տէր եւ Տիկին Վահրամ Խրիմեան, Պ. Պ. Լեւոն եւ Հայկազն Խրիմեան եւ պարագաները շնորհակալութիւն կը յայտնեն ամէն անոնց որոնք անձամբ եւ գրաւոր ցաւակցութիւն յայտնեցին՝ *ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ՍՐԲՈՒՀԻ ԽՐԻՄԵԱՆի* դառնաղէտ մահուան առթիւ։

Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Damesme :-: PARIS (13e)
Le Gérant : H. STEPHAN

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

*ՊԵՐՊԵՐԵԱՆ նախկին Սանուց Միութեան ճաշկերոյթը տեղի կ'ունենայ Յունուար 30ի ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, «Ֆլօրիա» ճաշարանը,* 61, Rue Mr. le Prince, *մէթրօ՝ Օտէօն կամ Սէն-Միշէլ։*

*Օր. Մաննիկ Պէրպէրեանի սիրայօժար մասնակցութիւնը առիթ համարելով կը հրաւիրուին բոլոր սաները եւ համակիրները. կը խնդրուի վերաշխեալ հասցէին երկտողով մը իմացնել յանձնախումբին.—*

Association des Anciens Elèves du Collège Berberian.

# Հ. Մ. Ը. Մ.Ի ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

**28 Յունուար Շաբաթ գիշեր,** Hôtel Moderneի հոյակապ սրահներուն մէջ Place de la République

Ծոխ յայտագիր — Պարի եւ ծպտեալներու մրցումներ — Երկու մեծ նուագախումբ — Ղեկավարութեամբ Պարի Փրոֆէսէօր՝ Պ. ԵԱՂՄՈՒՐԵԱՆԻ

ԾԱՆՕԹ.— Ծպտեալները պարտաւոր են ներկայացնել սփորները մրցումին կարենալ մասնակցելու համար:



բաստ է ուզղակի բանակցութիւններ կատարելու ընկերութեան հետ: Մանչեսթրաթէս չեշտեց թէ կառավարութիւնը չի կրնար եւ առնել միանշանակ վճռման որոշումը, իբրեւ նախապայման բանակցութեանց: Եւ, Թէհրանը յարմարագոյն վայրը կը նկատէ բանակցութեանց: «Մեր կառավարութիւնը իրաւունք ունէր չակելու երեսուն տարի առաջ եղած տխմար գործառնութիւն մը որուն պայմանները միակողմանի են եւ աննպաստ՝ Պարսկաստանի շահերուն»:

*** Այսօր Թէհրանէն ճամբայ կ'ելլէ այն պատուիրակութիւնը որ պիտի պաշտպանէ Պարսկաստանի տեսակէտը, Ազգերու Դաշնակցութեան խորհուրդին առջեւ:

## Ընտանեկան խնջոյք Նոր Տարուան առթիւ

նախաձեռնութեամբ՝

Հ. Յ. Դ. ԼԻՈՆԻ ՔՐԻՍՏԱՓՈՐ, ԶԱՒԱՐԵԱՆ եւ ՌՈՍՏՈՄ ԽՈՒՄԲԵՐՈՒ

եւ հովանաւորութեամբ՝ ԼԻՈՆԻ ՄԱՐՄԻՆԻՆ

Այսօր, Շաբաթ երեկոյ ժամը 8.30էն մինչեւ առաւօտ

Ընկ. ԲԷՆՍԻՐԵԱՆԻ ճաշարանը, 40 rue Pierre Corneille

Կը նախագահէ՝ ընկ. ԱՅՎԱԶԵԱՆ Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ

## ՇՔԵՂ ՊԱՐԱՆՑԻԿ — ՑԵՐԵԿՈՅԹ

## ՀԱՅԿ. ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀ. ՄԻՈՒԹԵԱՆ

Փարիզի մասնաժողովին կողմէ

Ի ՆՊԱՍՏ ՀԱՅԵՐԷՆԻ ԴԱՍԸՆԹԱՑՔՆԵՐՈՒ

Նախագահութեամբ՝ Պ. Գ. ՆՈՐԱՏՈՒՆԿԵԱՆԻ

**8 Յունուար Կիրակի, կէս օրէ վերջ ժամը 16էն մինչեւ կէս գիշեր Շան զ'Էլիզէի սրահներուն մէջ**

**79, Ave. des Champs Elysées (Paris 8)**

**Métro: Georges V.**

Գեղարուեստական բաժին: Եւրոպական պարեր:

Նուագախումբ ղեկավարութեամբ Պ. **PIZZARO**ի

Պարերու մրցումներ, առաջին եւ երկրորդ մրցանակներ

Մուտք՝ 25 ֆրանք

## Դպրոցական հանդէս Կաղանդի առթիւ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ ՇԱՎԻԼԻ ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶԻ ԿՈՂՄԷ

Վաղը կիրակի, կէս օրէ վերջ ժամը 2.30ին **Salle Patin**ի սրահին մէջ

**114, Grand' Rue - Chaville**

կը ներկայացուի՝ «ՋԱՎԱԼԼԸՆ»

Հայկ. երգեր եւ պարեր, նուագ, մանկական արտասանութիւններ եւյլն.:

Մեներգ Օր. Ի. ՏԱՅԵԱՆԻ կողմէ

Մուտք՝ 3 ֆրանք

Հաղորդակցութեան միջոց.— Porte St. Cloudէն առնել 1 Թիւ հանրակառքը եւ իջնել Ancienne Mairie:

## Տօնածառ

Կազմակերպուած Ֆրանսահայ Կարմիր Խաչի մասնաճիւղի կողմէ

Մասնակցութեամբ «Հայ Արի» գայլիկներու:

Այս երկուշաբթի, կէս օրէ վերջ ժամը 2.30ին,

183, rue Tolbiac (Métro Tolbiac)

Մանկական խաղեր, զուարճալիքներ: Երախաներուն կը բաժնուի նուէրներ:

Մուտքը՝ ազատ է:

## Մանկապարտէզի հանդէս

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ ՏԷՍԻՆԻ ՆՈՐԱԲԱՑ ԴՊՐՈՑԻ ԿՈՂՄԷ

Վաղը, կիրակի կէս օրէ վերջ, ժամը 3ին, Հ. Յ. Դ.՝ թատերասրահին մէջ

Մանկական եւ ազգային երգեր, արտասանութիւններ, զուգերգներ եւ անակնկալներ երկսեռ մանուկներու կողմէ:

Կը ներկայացուի Պետրոս Դուրեանի

«ՍԵՒ ՀՈՂԵՐ»ը կամ «ՍԵԲԱՍՏԻՈՅ ԱՆԿՈՒՄ»ը (երկու տեսարան)

Մուտք՝ 3 ֆրանք

## ՆՈՒԻՐԱՏՈՒՔ

ՍՏԱՑԱՆՔ

Մարսէյլ, Գործ.— 881.60:

Լիոն, Գործ.— 300:

Բուրպըվուա, Ջ. Խ.— 140:

Ժընեւ, Տիկին Գ.— 95:

Պէքոն, Սօս. Բ.— 70:

Անիէռ, Ժ. Ղ.— 35:

Իսի-լէ-Մուլինօ, Ս. Մ.— 200:

Ռոմէնվիլ, Ա. Լ.— 400:

Բլամառ, Նիկ.— 70:

Վիէն, Տ.— 5:

Լիոն, Տ. Տ.— 70:

Անկիէն, Տ. Ջ.— 35:

Անկիէն, Մ. Պ.— 100:

Բլամառ, Ժ. Ա.— 35:

Սէն Թ'Օպան, Ջաւ.— 70:

Բանտիս, Յ. Մ.— 100:

Վիթրի, Յ. Ա.— 140:

Ռընած, Վ. Խ.— 105:

Նիս, Յ. Տ. Օ.— 30:

Շավիլ, Գ. Գ.— 70:

Փարիզ (15), Ե. Մ.— 60:

Վէրսէօն, Հ. Բ.— 140:

Անիէռ, Տիկ. Զ.— 70:




Imprimerie A. DER (AGOPIAN)

17, Rue Damesme :-: PARIS (13e)

Le Gérant : H. STEPHAN